ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



СОДЕРЖАНИЕ



Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

Адрес редакции — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 24
ԴԵԿՏԵՄԲԵՐ
1964

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ

*Սովետական ժողովրդի կյանքում տեղի ունեցավ խոշորագույն իրադարձություն՝ օրերս ՍՍՌՄ Գերագույն սովետի 5-րդ սեսիան մեծ հաջողությամբ ավարտեց իր բեղմնավոր աշխատանքը, ընդունեց շատ կարևորագույն որոշումներ մեր երկրի ժողովրդական տնտեսության ծաղկման ու բարգավաճման, ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման վերաբերյալ։ Սեսիայում ժողովրդական տնտեսության զարգացման 1965 թվականի պետական պլանի մասին զեկուցումով հանդես եկավ ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ, դեպուտատ Ա. Ն. Կոսիգինը։*

*— Մեր երկրի աշխատավորները,— ասում է նա,— հաջողությամբ ավարտում են 1964 թվականի ժողովրդա-տնտեսական պլանի կատարումը։ Այժմ արդեն կարելի է ամփոփել մեր երկրի էկոնոմիկայի կարևորագույն ճյուղերի գծով առաջադրանքների կատարման նախնական արդյունքները։ Արդյունաբերական արտադրության այս տարվա պլանը կգերակատարվի։ Կոլտնտեսականները և սովխոզների աշխատողներն աճեցրել են հացահատիկի, շաքարի ճակնդեղի, բամբակի, արևածաղկի, կարտոֆիլի ու բանջարեղենի լավ բերք։ Սակայն եա է մնում անսանապահությունը։ Այս բնագավառում արտահայտվում են գյուղատնտեսության համար դժվարին տարվա՝ 1963 թվականի հետևանքները։*

*Տարվա արդյունքները ցույց են տալիս, որ ժողովր-*

դական տնտեսության զարգացումն ընթանում է կոմունիստական պարտիայի ծրագրած ուղիով: Նոր քայլ է կատարվել երկրի արտադրողական ուժերի զարգացման ասպարեզում:

Մեր պարտիայի Կենտրոնական կոմիտեի նախագահությունը և ՍՍՌՄ Մինիստրների սովետը համակողմանիորեն քննարկեցին 1965 թվականի ժողովրդատնտեսական պլանի նախագիծը, անհրաժեշտ համարեցին արագացնել արդյունաբերական արտադրության աճի տեմպերը և լրացուցիչ ռեսուրսներ գտան սովետական ժողովրդի կենսամակարդակն էլ ավելի բարձրացնելու մի շարք կարևոր միջոցառումներ կիրառելու համար:

1965 թվականի պլանի նախագծի կարևոր առանձնահատկությունը ազգային եկամտի նշանակալի աճն է և դրա հիման վրա սովետական մարդկանց կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացումը: Եթե անցյալ տարվա համեմատությամբ այս տարի ազգային եկամտի աճը կկազմի 5 տոկոս, ապա 1965 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, այդ աճը նախագծված է 8 տոկոս:

Պլանով նախատեսվում է արագացնել արդյունաբերության զարգացման տեմպերը և բարելավել արտադրական ռեսուրսների օգտագործումը:

1964 թվականի համեմատությամբ նախատեսվում է 1965 թվականին ամբողջ արդյունաբերության արտադրանքը ավելացնել 8,1 տոկոսով (այս տարի այդ աճը կկազմի 7,8 տոկոս):

1965 թվականին գլխավոր ուշադրությունը պետք է կենտրոնացվի արտադրության տեխնիկական մակարդակի հետագա բարձրացման, առարկաների որակի բարելավման, արտադրանքի հնացած տեսակները նորերով, ավելի կատարյալ, համաշխարհային լավագույն ստանդարտներին համապատասխանող տեսակներով փոխարինելու վրա:

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում տեխնիկական առաջադիմության հիմքը էլեկտրիֆիկացիայի հետագա զարգացումն է: Եկող տարվա համար պլանավորված է 510 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի արտադրություն:

Արդյունաբերության ճյուղերի մեջ աճի տեմպերով առաջվա պես առաջին տեղը կգրավի քիմիան, որի համախառն արտադրանքը 1965 թվականին կաճի մոտավորապես 15 տոկոսով:





Եկող տարի նախատեսվում է արտադրել առնվազն 90 միլիոն տոննա պողպատ, մոտ 70 միլիոն տոննա գլանվածք, զգալիորեն ավելացնել խողովակների արտադրությունը, ընդլայնել և բարելավել մետաղի ասորտիմենտը: Կավելանա նաև ալյումինի, պղնձի, կապարի, ցինկի, նիկելի և այլ գունավոր, ինչպես նաև հազվագյուտ մետաղների արտադրությունը:

Նախատեսվում է նավթի հանույթը հասցնել 422 միլիոն տոննայի և գազինը՝ 128 միլիարդ խորանարդ մետրի:

— Եկող տարի,—նշում է զեկուցողը,—ծանր ինդուստրիան ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը ընդլայնելու համար ավելի շատ մեքենաներ, հումք և նյութեր է տալու, քան առաջ:

Ավելացվում է գործվածքեղենի, տրիկոտաժեղենի, կոշկի, ինչպես նաև սննդամթերքների թողարկումը: Ընդսմին առանձնահատուկ ուշադրություն կնվիրվի այդ ապրանքների ասորտիմենտի ընդլայնմանը և որակի բարձրացմանը:

Զեկուցման մեջ զգալի տեղ է հատկացված գյուղատնտեսության պրոբլեմներին: Վերջին տարիներին,—ասում է ընկ. Կոսիգինը,—գյուղատնտեսության մեջ սահմանված պլանային առաջադրանքները չէին կատարվում: Գյուղատնտեսության ղեկավարման գործում թույլ են տրված լուրջ սխալներ՝ կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության սկզբունքի խախտումներ, վարչարարություն, կազմակերպական անընդհատ վերակառուցումներ: Այս ամենը կործանարար ազդեցություն գործեց գյուղատնտեսության վրա: Բացառիկ անբարենպաստ կլիմայական պայմանների պատճառով անցյալ տարի առանձնապես ծանր էր մեր գյուղատնտեսության համար: Գյուղատնտեսության ետ մնալը չէր կարող չանդրադառնալ ամբողջ երկրի էկոնոմիկայի զարգացման և, մասնավորապես, բնակչությանը պարենով և արդյունաբերությունը հումքով ապահովելու վրա:

Այս տարի հողագործության ասպարեզում ձեռք բերվեցին որոշ դրական արդյունքներ: Եղանակը ավելի բարենպաստ էր: Հացահատիկի, շաքարի ճակնդեղի, արևածաղկի, բամբակի, կարտոֆիլի գնումների պետական պլանները ոչ միայն կատարվել, այլև որոշ չափով գերակատարվել են: Այդ մթերքները, ինչպես նաև բանջա-

րեղեն, միրգ, ծխախոտ զգալիորեն շատ է գնվել, քան անցյալ տարիներին։

Նշելով այդ դրական արդյունքները, մենք պետք է ասենք, որ ամբողջ գյուղատնտեսության և առանձնապես անասնապահության ետ մնալը դեռ հաղթահարված չէ։ Դրա պատճառներից մեկն այն է, որ թեև վերջին տարիներս ամրապնդվեց գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան, այն դեռ բավարար չէ։ Մեր առջև ծառացած է հետևյալ անհետաձգելի խնդիրը՝ ինչքան կարելի է արագ գյուղատնտեսությանը լիուլի մատակարարել տրակտորներ, ժամանակակից մեքենաներ, պարարտանյութեր։

1965 թվականին կոլտնտեսություններն ու սովխոզները գրեթե մեկ երրորդով ավելի հանքային պարարտանյութ կստանան, քան 1964 թվականին։ Եկող տարի կավելանա նաև մոլախոտերի և բույսերի վնասատուների դեմ պայքարի քիմիական միջոցների մատակարարումը։ Գյուղատնտեսությանը զգալի միջոցներ են հատկացվում շինարարության կարիքների համար։ 1965 թվականի պլանով արտադրական նպատակների կապիտալ ներդրումները նախատեսված են 5,7 միլիարդ ռուբլի, դա 18 տոկոսով ավելի է, քան անցյալ տարի։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը մտահոգված են անասնապահության ետամնացությամբ և ձեռնարկում են նրա ամենաարագ վերելքի միջոցներ։ Այս դեպքում անհետաձգելի է կերի բազայի ամրապնդման գործնական միջոցառումների կիրառումը։ Կոլտնտեսություններն ու սովխոզները պետք է մեծ աշխատանք կատարեն կերի արտադրությունը ընդլայնելու և բնական արոտավայրերը ճիշտ օգտագործելու ուղղությամբ։

Առաջնակարգ նշանակություն տալով կոլտնտեսությունների և սովխոզների հանրային արտադրության զարգացմանը, պարտիան և կառավարությունը միևնույն ժամանակ անհրաժեշտ համարեցին վերացնել կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների անձնական օժանդակ տնտեսության ոչ խելացի, չհիմնավորված սահմանափակումները, վերացնել անասուններ ունեցող անձերից գանձվող հարկը, որոշեցին անասունների տերերին վաճառել խտացրած կեր։

Որոշված է նաև բարձրացնել կաթի պետական գնման գները, որպեսզի մեծանա գյուղատնտեսության աշ-



խատողների շահագրգռվածությունը կաթի արտադրությամբ։ Ընդսմին կաթի և կաթնամթերքների գոյություն ունեցող մանրածախ գները մնում են անփոփոխ։

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման գործում, այնուհետև ասում է ընկ. Կոսիգինը, զգալի դեր է խաղում կապիտալ շինարարությունը։ Անցած վեց տարում արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության, բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության մեջ ներդրվել է մոտ երկու հարյուր միլիարդ ռուբլի, կամ գրեթե այնքան, որքան ներդրվել էր սովետական իշխանության բոլոր նախորդ տարիներին։ Պետական կապիտալ ներդրումները 1965 թվականին կկազմեն 38 միլիարդ 400 միլիոն ռուբլի, որ մոտավորապես 11 տոկոսով ավելի է, քան 1964 թվականին։

Մշակելով պլանի նախագիծը, ասում է զեկուցողը, պարտիայի Կենտրոնական կոմիտեն և կառավարությունը բազմակողմանիորեն քննարկեցին այն ռեսուրսների հարցը, որոնք կարող են գործադրվել ժողովրդի կենսամակարդակի բարձրացման համար, և որոշեցին պլանի նախագծում նախատեսել, որ 1965 թվականին բնակչության ռեալ եկամուտները, մեկ մարդու հաշվով, մեծանան ավելի քան 7 տոկոսով։ Դա ռեալ եկամուտների բարձր աճ է, որը ավելի քան կրկնակի բարձր է 1959—1964 թվականների միջև տարեկան աճից։ 1965 թվականին բնակչության ռեալ եկամուտները աճելու են ամենից առաջ աշխատավարձի ավելացման հաշվին։

ՍՍՌՄ Գերագույն սովետի նախորդ սեսիայում ընդունվեց ուսուցիչների, բժիշկների և անմիջականորեն բնակչությանը սպասարկող ճյուղերի մյուս աշխատողների աշխատավարձը բարձրացնելու օրենքը։

Պետք է Գերագույն սովետին զեկուցեմ, որ ըստ օրենքի աշխատանքի վարձատրության նոր պայմանները կիրառվել են 1964 թվականի հոկտեմբերին երկրի հյուսիսային շրջանների բնակչությանը սպասարկող բոլոր ճյուղերի աշխատողների համար, իսկ 1964 թվականի նոյեմբերի 1-ից՝ ամբողջ երկրի լուսավորության և առողջապահության աշխատողների համար։

Այդ նույն օրենքով բնակարանային-կոմունալ տնտեսության և կենցաղային սպասարկման ձեռնարկությունների աշխատողների աշխատավարձը պետք է բարձրանա 1965 թվականի երրորդ եռամսյակին, իսկ անմիջականորեն բնակչությանը սպասարկող մնացած ճյուղերի

աշխատողների աշխատավարձը՝ 1965 թվականի չորրորդ եռամսյակին։ Նախատեսվում էր այդ նույն ժամկետում ավարտել աշխատավարձի բարձրացված նվազագույնի կիրառումը։

Պարտիայի Կենտրոնական կոմիտեն և կառավարությունը քննարկեցին այդ միջոցառումները ավելի կարճ ժամկետներում իրագործելու հնարավորության հարցը։ Գերագույն սովետի հաստատմանը առաջարկ է ներկայացվում, որ 1965 թվականի հունվարի 1-ից աշխատողների դրույքներն ու ռոճիկները հասցվեն սահմանված նվազագույնին, այն ճյուղերում, որտեղ դրանք դեռ բարձրացված չեն։

Մոտ ժամանակամիջոցում ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը ըստ ամենայնի ավելացնելու հետ մեկտեղ պետք է մեծ ուշադրություն նվիրվի առևտրի և հասարակական սննդի լայն զարգացմանը, կուլտուրայի հիմնարկների և կոմունալ-կենցաղային ձեռնարկությունների շինարարությանը։ Տնտեսական շինարարության պրակտիկայում երբեմն նսեմացվում, թերագնահատվում է սպասարկման ճյուղերի դերը։ Դա ճիշտ չէ։ Տնտեսական պլանները մշակելիս մենք պետք է հաշվի առնենք, որ ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի աճի համեմատ կաճեն բնակչության պահանջները սպասարկման ճյուղերի նկատմամբ, և մենք պետք է ժամանակին հոգանք այդ պահանջները բավարարելու մասին։

Պետական և կոոպերատիվ առևտրի մեջ բնակչությանը ժողովրդական սպառման ապրանքների վաճառքը 1965 թվականին կաճի ավելի քան յոթ միլիարդ ռուբլով, մինչդեռ 1964 թվականին այն աճեց ընդամենը չորս և կես միլիարդ ռուբլով։

Մենք բավականաչափ ապրանքային ռեսուրսներ ունենք, որպեսզի անխափան և լավ կատարենք հագուստեղենի, գործվածքեղենի, կոշիկի, տնտեսական ամանեղենի, կահույքի, էլեկտրակենցաղային սարքերի, ռադիոընդունիչների, հեռուստացույցների, լվացքի մեքենաների, ժամացույցների, լուսանկարչական ապարատների և արդյունաբերական շատ այլ ապրանքների առևտուրը։

Պարենային ապրանքների ռեսուրսները թույլ կտան 1965 թվականին բնակչությանը անխափան ապահովել հացով, մակարոնեղենով, ձավարեղենով, շաքարով, հր-



րուշակեղենով, ձեթով, պահածոներով և պարենային մի քանի այլ ապրանքներով։ Ընդսմին զգալիորեն կավելացվի սպիտակ հացի վաճառքը։

1965 թվականին բնակչությանը անասնապահական մթերքներով մատակարարելու գործում դեռ որոշ դժվարություններ կմնան։ Կառավարությունը մշակում է հատուկ միջոցառումներ, որոնց մի մասը արդեն մտցված է 1965 թվականի պլանի մեջ, որպեսզի մոտ ժամանակներս բարելավվի բնակչությանը միս ու յուղ մատակարարելու գործը։

Պարտիան և կառավարությունը,—շարունակում է ընկ. Կոսիգինը,—առանձնահատուկ նշանակություն են տալիս բնակարանային պրոբլեմին։ Վերջին վեց տարում մեր երկրի բնակչության մոտավորապես մեկ երրորդ մասը բարելավեց իր բնակարանային պայմանները։ Սակայն բնակարանի պահանջը դեռ մեծ է։ Ուստի չի կարելի արդարացված համարել բնակարանային շինարարության ծավալի կրճատումը, որը թույլ տրվեց վերջին երկու-երեք տարում։ 1965 թվականին բնակարանային շինարարությունը կավելացվի։ Ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին նախատեսվում է կառուցել 84 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ՝ այս տարի կառուցված 73,6 միլիոն քառակուսի մետրի դիմաց։

Զեկուցման մի հատուկ բաժին նվիրված է գիտատեխնիկական առաջադիմության և արտադրության ռեզերվների օգտագործման պրոբլեմներին, ինչպես նաև աշխատանքի արտադրողականության աճին, որի հաշվին 1965 թվականին արդյունաբերության մեջ կստացվի արտադրանքի աճի 70 տոկոսը։ Աշխատանքի արտադրողականության աճը նախագծված է. արդյունաբերության մեջ՝ 5,7 տոկոս և շինարարության մեջ՝ 6 տոկոս։

Ընկ. Կոսիգինը իր զեկուցման վերջին մասում անդրադարձավ սովետական արտաքին քաղաքականության՝ կոմունիստական շինարարության համար խաղաղ պայմաններ ապահովելու խնդիրներին։

Վերջում ընկ. Կոսիգինն ասում է.

ՍՄԿՊ Կենտկոմի այս տարվա հոկտեմբերին և նոյեմբերին կայացած պլենումների որոշումները լայն հնարավորություններ բաց արեցին, որ բոլոր սովետական մարդիկ ցուցաբերեն ստեղծագործական նախաձեռնու-

թյուն և ակտիվորեն մասնակցեն կոմունիստական շինարարությանը։

1965 թվականի ժողովրդատնտեսական պլանը՝ յոթնամյակի վերջին տարվա պլանը ևս մի առաջընթաց քայլ կլինի դեպի այն նպատակների իրագործումը, որ կոմունիստական պարտիան դրել է մեր ժողովրդի առջև։

Այնուհետև ՍՍՌՄ 1965 թվականի պետական բյուջեի և 1963 թվականի պետական բյուջեի կատարման մասին զեկուցումով հանդես եկավ ՍՍՌՄ ֆինանսների մինիստրը, դեպուտատ Վ. Ֆ. Գարբուզովը։

ՍՍՌՄ 1965 թվականի պետական բյուջեին,— ասում է մինիստրը,— Գերագույն սովետի երրորդ սեսիան հավանություն տվեց եկամուտների և ծախսերի ընդհանուր գումարներով։ Ժողովրդական տնտեսության զարգացման եկող տարվա պլանի ճշգրտման, ինչպես նաև ՍՍՌՄ Մինիստրների սովետի ընդունած որոշումների կապակցությամբ, բյուջեում մտցվել են համապատասխան շտկումներ։ Այն ներկայացվում է հետևյալ գումարներով. եկամուտների գծով 99,6 միլիարդ ռուբլի և ծախսերի գծով՝ 99,4 միլիարդ ռուբլի։

1965 թվականի բյուջեի ծախսերը ընթացիկ տարվա բյուջեի սպասվող կատարման համեմատությամբ ավելանում են 6,6 միլիարդ ռուբլով, կամ յոթ տոկոսով։ Բյուջեի ծախսերի ընդհանուր աճի գրեթե 78 տոկոսը անմիջականորեն ուղղվում է աշխատավորների կենսամակարդակի բարձրացմանը։

Զեկուցողը նշում է, որ բյուջեով նախատեսվում է առաջիկա տարում ծախսել. ժողովրդական տնտեսության համար՝ 42,3 միլիարդ ռուբլի (1964 թվականին՝ 38,7 միլիարդ), սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար՝ 37,4 միլիարդ ռուբլի (1964 թվականին՝ 32,8 միլիարդ), պաշտպանության համար՝ 12,8 միլիարդ ռուբլի (1964 թվականին՝ 13,3 միլիարդ) և կառավարման օրգանների համար՝ 1,1 միլիարդ ռուբլի, այնքան, որքան ծախսվել էր նաև 1964 թվականին։

1965 թվականին բյուջեի ծախսերը այս տարվա համեմատությամբ կաճեն 5,8 միլիարդ ռուբլով, կամ 6,1 տոկոսով։ Բոլոր եկամուտների ավելի քան ինը տասներորդը կազմում են շահույթի մասհանումները, շրջանառության հարկի հասույթները և սոցիալիստական տնտեսության մյուս եկամուտները։

1965 թվականին կոլտնտեսություններից գանձվող ե-



կամտահարկի հասույթները նախատեսված են 1067 միլիոն ռուբլի։ Ընդսմին, հաշվի են առնված անասնապահության եկամտահարկի գծով կոլտնտեսություններին տրված արտոնությունները, տնտեսապես թույլ տնտեսությունների հարկերը 75 տոկոսով պակասեցնելը, ինչպես նաև մի շարք այլ արտոնություններ։ Եկամտահարկի գծով կոլտնտեսություններին տրված արտոնությունների ընդհանուր գումարը 1965 թվականին կկազմի 477 միլիոն ռուբլի։

1965 թվականին բնակչությունից գանձվող հարկերը սահմանված են 7,3 միլիարդ ռուբլի՝ ըստ բանվորների և ծառայողների սահմանված թվի, աշխատավարձի ֆոնդի և հարկերի գործող դրույքների։ Բյուջեում հաշվի է առնված նաև քաղաքների և բանվորական ավանների քաղաքացիների անձնական սեփականություն հանդիսացող անասունների հարկի վերացումը։

ՍՍՌՄ պետական բյուջեի ռեսուրսները, նշում է ընկ. Գարբուզովը, լիովին ապահովում են ժողովրդական տնտեսության զարգացման 1965 թվականի պլանով նախատեսված միջոցառումների իրագործումը։ Պահանջվում է բոլոր ձեռնարկությունների, կառույցների, սովխոզների, հիմնարկների և կազմակերպությունների կոլեկտիվների ստեղծագործական մեծ աշխատանքը, որպեսզի պետական միջոցները տնտեսական առավել մեծ արդյունավետությամբ գործադրվեն իրենց անմիջական նպատակի համար։

ՍՍՌՄ Գերագույն սովետի սեսիայում ժողովրդատնտեսական պլանի և բյուջեի քննարկումը անցավ գործարար մթնոլորտում։

Այն հսկայական ուշադրությունը, որով բոլոր սովետական մարդիկ հետևում էին սեսիայի աշխատանքին և ջերմորեն հավանություն տալիս նրա ընդունած օրենքներին, համոզիչ կերպով ցույց են տալիս, որ այդ որոշումներն ու օրենքները լիովին համապատասխանում են ամբողջ ժողովրդի իղձերին ու ձգտումներին։

Սեսիայում մեծ ուշադրություն դարձվեց ազգային ռեսպուբլիկաների ծաղկման ու բարգավաճման վրա։ Սահմանվեց միութենական ռեսպուբլիկաների 1965 թվականի պետական բյուջեների եկամուտներն ու ծախսերը։ Հայկական ՍՍՌ-ի պետական բյուջեն 1965 թվականի համար սահմանված է 603 միլիոն 618 հազար ռուբլի՝ 1964 թվականի 533 միլիոն ռուբլու դիմաց։ Դա հնարա-

վորություն կտա անշեղորեն բարձրացնել մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկան և աշխատավորների նյութական բարեկեցությունը։

Մեր երկրի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, ժողովրդական ինտելիգենցիան և մեր փառապանծ երիտասարդությունը իրենց բոլոր ուժերն ու գիտելիքները կգործադրեն 1965 թվականի ժողովրդատնտեսական պլանով առաջադրված մեծ խնդիրները պատվով կատարելու համար։

***

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ՍՍՌՄ Գերագույն սովետի 6-րդ գումարման 5-րդ սեսիան նշանավորեցին աշխատանքային նոր հաջողություններով։ Սեսիայի օրերին Երևանի և ռեսպուբլիկայի բազմաթիվ գործարաններ ու ֆաբրիկաներ կատարեցին տարեկան արտադրական պլանները։ Երևանի Սպանդարյանի շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները ժամկետից 22 օր շուտ կատարեցին համախառն արտադրանքի թողարկման տարեկան պլանը։

Աչքի ընկնող հաջողություններ են ձեռք բերել ռեսպուբլիկայի ժողտնտխորհի գունավոր մետալուրգիայի և հանքարդյունաբերության վարչության ձեռնարկությունների աշխատողները։ Նրանք համախառն արտադրանքի տարեկան պլանը կատարեցին ժամկետից շուտ, դեկտեմբերի 15-ին։ Մինչև տարվա վերջը պլանից դուրս կթողարկվի մի քանի միլիոն ռուբլու արտադրանք։

Նշանակալից հաջողությունների են հասել նաև ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության աշխատողները։ Անցյալ տարվա համեմատությամբ ժողտնտխորհի քիմիական ձեռնարկությունների արտադրանքն աճել է 25 տոկոսով, մինչև դեկտեմբերի վերջը աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա 17,4 տոկոսով, իսկ ինքնարժեքը կիջնի գրեթե 3 տոկոսով։

ՍՍՌՄ Գերագույն սովետի 5-րդ սեսիայի բացման երրորդ օրը ժամկետից 20 օր շուտ Կիրովականի արդյունաբերական ձեռնարկությունները կատարեցին տարեկան պլանը։

Ռեսպուբլիկայի գործարաններում, ֆաբրիկաներում և կոլտնտեսություններում եռանդուն աշխատանք է կատարվում 1965 թվականի պլանները բարձր ցուցանիշներով կատարելու համար։



# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿՈՒԲԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

Նոր տարվա առաջին օրը Ազատության կղզու հերոս ժողովուրդը ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկության հետ միասին նշելու է ռևոլյուցիայի հաղթանակի տոնը։

Ռևոլյուցիայի հաղթանակից հետո անցած վեց տարիներին Կուբան անցել է պատմական մեծ ճանապարհ։ Սովետական Միության և եղբայրական սոցիալիստական մյուս երկրների անշահախնդիր օգնության շնորհիվ Կուբայի Ռեսպուբլիկան նորանոր հաղթանակներ է նվաճում սոցիալիստական հասարակություն կառուցելու գործում։

\# Ներկայումս Կուբայի արդյունաբերական արտադրանքի 90 տոկոսը, մշակվող հողերի 70 տոկոսը, ամբողջ արտաքին առևտուրը պատկանում են սոցիալիստական սեկտորին։

\# Չորսամյակի տարիներին (1962—1965) նոր կառուցված արդյունաբերական ձեռնարկությունների թիվը կանցնի 100-ից։

\# Մինչև 1965 թվականի վերջը երկիրը կհարստանա մետալուրգիական, մեքենաշինական և քիմիական նոր գործարաններով, տեքստիլ ֆաբրիկաներով, ցեմենտի և սննդի կոմբինատներով, էլեկտրակայաններով և այլն։

\# Վերջերս շարք մտան երկու խոշոր ձեռնարկություններ, որոնք մեծ նշանակություն ունեն երկրի համար։ Այդ մեխանիկական գործարանն է, որը կառուցվում է ՍՍՌՄ-ի օգնությամբ և սառնարանների ու այլ կենցաղային առարկաների գործարանը՝ Չեխոսլովակիայի օգնությամբ։

\# ՍՍՌՄ-ի օգնությամբ կատարվում է մետալուրգիական ձեռնարկությունների վերակառուցում։ Վերակառուցման աշխատանքները ավարտելուց հետո Կուբան տարեկան կարտադրի 350 հազար տոննա պողպատ և այդ ուղղությամբ Լատինական Ամերիկայում կգրավի առաջին տեղը։

Մեծ դեր է խաղալու «Մարիել» էլեկտրակայանը, որը կառուցվում է ՍՍՌՄ-ի օգնությամբ: Նրա առաջին հերթի հզորությունը կազմում է 200 հազար կիլովատ:

Կուբայի արդյունաբերական զարգացման գործում մեծ օգնություն են ցույց տալիս սոցիալիստական մյուս երկրները: ԳԴՀ-ի օգնությամբ կառուցվում է ցեմենտի գործարան և պլաստմասսայի ֆաբրիկա: Հունգարիան և Լեհաստանը օգնում են կառուցելու ապակու խոշոր ձեռնարկությունը, Չեխոսլովակիան՝ դիզելային շարժիչների գործարանը և մի շարք էլեկտրակայաններ:

Սոցիալիստական երկրների օգնությամբ մինչև 1963 թվականի վերջը կառուցվել է 26 խոշոր ձեռնարկություն: Ավելի քան 30 ձեռնարկությունների կառուցման աշխատանքները կավարտվեն մոտ ժամանակներս:

Լրիվ օգտագործելով եղած բոլոր հնարավորությունները՝ առաջիկա տարիներին Կուբան կսկսի արտադրել 45 հազար տոննա մետաղական նիկել և Կանադայից հետո այդ ուղղությամբ աշխարհում կգրավի երկրորդ տեղը:

Այժմ Կուբայի արդյունաբերության մեջ, տրանսպորտի և շինարարության մեջ զբաղված է 150 հազար մարդ:

Այժմ Կուբայում բժիշկների թիվը կազմում է 5 հազար, իսկ բուժքույրերինը՝ 25 հազար մարդ:

Կուբայի 126 մանկամսուրներում և մանկապարտեզներում դաստիարակվում են 10 հազար երեխաներ:

Միայն ռևոլյուցիայի առաջին երեք տարիներին երկրում եղած դպրոցների թիվը կրկնապատկվել է:

Հաջողությամբ զարգանում է նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը: Գյուղատնտեսության աշխատողները այժմ պայքարում են առաջիկա տասը տարվա ընթացքում հասնել տարեկան 10 միլիոն տոննա շաքար արտադրելու բնագծին:

Նախկին լատիֆունդիաների փոխարեն այժմ ռեսպուբլիկայում ստեղծված են ավելի քան 590 պետական կալվածքներ, որոնք կազմում են երկրի գյուղատնտեսության մեջ պետական սեկտորի հիմքը:

Կուբացի 500 բանվորներ ու տեխնիկներ արդեն ավարտել



են սովետական պրոֆեսիոնալ-տեխնիկական դպրոցները և վերադարձել հայրենիք:

Գյուղատնտեսության մեխանիզացման սովետական դպրոցներում ուսումը ավարտել են 3 հազար կուբացի մեխանիզատորներ, որոնք այժմ հաջողությամբ աշխատում են Կուբայի ժողովրդական կալվածքներում:

Կուբայի ռևոլյուցիոն կառավարությունը մշակել է միջոցառումներ բազմաճյուղ գյուղատնտեսության զարգացման համար: Հաջողությամբ կատարելագործվում է ծխախոտի արտադրությունը: Մեծ ուշադրություն է դարձվում կոֆեի, կակաոյի և այլ մերձարևադարձային կուլտուրաների մշակությանը:

Կուբայի բնակչությանը կենսամթերքներով ապահովելու գործում առաջիկայում կարևոր նշանակություն կստանա ձկնային արդյունաբերությունը, որը փաստորեն նոր է ստեղծվում: Կառուցվում է ձկնորսական նոր նավատորմ: Ստեղծվում է սառնարանային և պահածոների արդյունաբերություն:

Ռևոլյուցիայի տարիներին շեշտակիորեն բարձրացել է ժողովրդի նյութական բարեկեցությունը: Գործազրկությունը, որից մինչև ռևոլյուցիան տառապում էին 700 հազար աշխատավորներ, այժմ ամբողջապես լիկվիդացված է:

Ռևոլյուցիան երկրում խսպառ վերացրել է ռասայական ատելի խտրականությունը, հաստատված է կանանց և տղամարդկանց իրավահավասարություն:

Լայն թափով երկրում իրականացվում է բնակարանային շինարարություն: 1959—1963 թվականներին կառուցվել է 85.447 տուն:

Չնայած ամերիկյան իմպերիալիստների ձեռնարկած արգելքներին, Կուբան հաջողությամբ զարգացնում է իր առևտրական և տնտեսական կապերը այնպիսի կապիտալիստական երկրների հետ, ինչպիսին են Անգլիան, Ֆրանսիան, Ճապոնիան, Իսպանիան:

Կուբայի ժողովուրդը համակված է մեծ վճռականությամբ՝ հաղթահարել բոլոր դժվարությունները և կենսագործել Կուբայի առջև դրված պատմական խնդիրը՝ առաջինը ամերիկյան կիսագնդում կառուցել սոցիալիստական պետություն:

## ՀՐԱՇՔ

— *Մեկ անգամ Հիսուս Քրիստոսը,— պատմում է տերտերը,— մի զարմանահրաշ գործ կատարեց. նա հինգ հացով հինգ հազար մարդ կշտացրեց։*

— *Դա հրաշք չէ, տեր հայր,— պատասխանեցին կոլտնտեսականները, առաջներում մեր գյուղում հինգ հազար հավատացյալներ մի տերտերի էին կերակրում, սակայն կշտացնել չէին կարողանում... Այ, դա հրաշք է։*

## ՕՐՀՆԱԾ ԿԱՏՈՒՆ

(Հայկական առակ)

*Մի կին տերտերի մոտ է տանում պղինձը ու դանգատվում, թե կատուն պղնձի մեջ եղած ջուրը լակելով, ամանը պղծել է։ Տերտերը պղինձն օրհնելով «պղծությունը վերացնում է»։ Մի քանի օր անց կինը մի այլ աման է տանում տերտերի մոտ «պղծությունը վերացնելու»։ Տեր հայրը նորից է օրհնում, բայց կինը հաճախ է նույն բանը կրկնում։ Ստիպված տերտերն ասում է.*

*«Այ կնիկ, փոխանակ կատվի լակած ամաններն ամեն անգամ օրհնելու, բեր միանգամից կատվի բերանն օրհնեմ, որպեսզի նրա լակած ամանները չպղծվեն»։*

## ՄԻԱՅՆԱԿՅԱՑՆ ՈՒ ԳԱՄՓՌ ՇՈՒՆԸ

*(Վարդան Այգեկցուց)*

*Մի միայնակյաց բնակվում էր մի գյուղի մոտ։ Նա սիրեց մի աղջիկ և բազում ժամանակ նրա հետ շնանում էր պոռնկությամբ։ Եվ գյուղի տանուտերն ուներ մի գամփռ շուն, որը խիստ պահող շուն էր և ամբողջ գյուղը պահում էր։ Մի գիշեր միայնակյացն եկավ, որ շնանա այն կնոջ հետ և գյուղի եզրին նրան հանդիպեց տանուտերի շունը և գամփռեց նրա վրա. և նրան կծեց և արյունը ճապաղ արեց և շատ վերքեր արեց և նեղելով նրան քշեց։ Եվ միայնակյացը լալով և արյունաթաթախ մտավ խուցը և դուռը փակեց, զղջաց և չոքեց աղոթքի, լաց եղավ և կուրծքը ծեծելով ասաց.*

*«Աստված, բազում ժամանակ է, որ շնացա և չվախեցա քո գատաստանից և ոչ դժոխքից զարհուրեցի, բայց այս գիշեր զարհուրեցի մի գամփռ շնից և չկարողացա շնություն անել»։*



## ՓՈՂԻ ՔՍԱԿԸ

(Ուկրաինական ժողովրդական առակ)

*Տերտերն անցնում էր կամուրջի վրայով, երբ հանկարծ կամուրջը փլվեց, տերտերը ջուրն ընկավ։*

*Մարդիկ հավաքվեցին, ճիգ ու ճանք թափեցին տերտերին ազատելու, բայց հնար չեղավ, տերտերն ընկել էր ջրապտույտի մեջ։*

*Մարդիկ շվարած դիմեցին փողոցով անցնող տիրացուին, խորհուրդ հարցրին, թե ինչպես, ի՞նչ հնարքով կարելի է տերտերին ազատել։*

*Տիրացուն առանց երկար ու բարակ մտածելու, մի շատ գործնական խորհուրդ տվեց.*

— *Դուք նրան փողի քսակը ցույց տվեք, նա կկարծե, թե իրեն են նվիրում, անմիջապես դեպի ափ կլողա։*

## ՊԱՍ ՊԱՀՈՂԸ

(Ֆրանսիական առակ)

*Մի տերտեր պասի օրերին իր ծառային ուղարկեց շուկա ձուկ առնելու։*

*Շուկայում ձուկ չկար։ Երբ այդ մասին ծառան հաղորդեց տերտերին, տերտերը հրամայեց գնալ խոզի միս առնել։*

— *Ինչպե՞ս,— զարմացավ ծառան,— չէ՞ որ պաս է...*

— *Ոչինչ, ես խոզի միսը կմկրտեմ և անունը ձուկ կդնեմ, ինքըդ դատիր, չէ՞ որ ավելի դժվար է գոմում ծնվել և աստված մկրտվել, ինչպես Հիսուսը, քան թե խոզի միսը ձուկ դարձնել։*

## ԿԱՄՊԱՆԻԱ ԵՐԿՆՔՈՒՄ

(Վրացական ժողովրդական առակ)

*Մեռնող տերտերի մոտ բերին զանազան թալիսմաններով բուժող հեքիմին։*

— *Հեքիմ ջան, մեռնում եմ, օգնիր...*

— *Ոչինչ, տեր հայր, մահը մերն է, բոլորս էլ մեռնելու ենք։*

— *Խանութպան Դաթիկո՞ն էլ...*

— *Այո, իհարկե։*

— *Վարդապետ Կալիստրա՞տն էլ...*

— *Այո, իհարկե։*

— *Պրիստավ Իլիա՞ն էլ...*

— *Այո, իհարկե։*

— *Հեքիմ ջան դո՞ւ էլ...*

— *Այո, ես էլ։*

— *Այ, այ թե կամպանիա կլինի երկնքում թղթախաղի և հարբեցողության համար։*

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. 1965 թվականը նշանավորենք նոր հաջողություններով

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Լենինյան կուրսով դեպի կոմունիզմի հաղթանակը, *Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 47-րդ տարեդարձի առթիվ տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 7-ի համարում:*

Ա. Ն. ԿՈՍԻԳԻՆ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1965 թվականի պետական պլանի մասին, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն սովետի 5-րդ նստաշրջանում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 10-ի համարում:*

Ն. Խ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Հայ ժողովրդի վերածնության տոնը, *հոդված տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 29-ի համարում:*

## 2. Կոմունիստական պարտիայի լենինյան գլխավոր գիծը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿԿ-ի լենինյան անսասան գլխավոր գիծը, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 18-ի համարում:*

Լենինյան կուրսով, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 12-ի համարում:*

Անսասան հավատարմություն ժողովրդի շահերին, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 14-ի համարում:*

Հավատարմություն լենինյան կազմակերպական սկզբունքներին, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 19-ի համարում:*

## 3. Նոր հոգատարություն սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման նկատմամբ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ա. Ն. ԿՈՍԻԳԻՆ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1965 թ. պետական պլանի մասին, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն*



*սովետի 5-րդ նստաշրջանում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 10-ի համարում:*

Վ. Ֆ. ԳԱՐԲՈՒԶՈՎ— ՍՍՌՄ 1965 թվականի պետական բյուջեի մասին և 1963 թվականի պետական բյուջեի կատարման մասին, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն սովետի 5-րդ նստաշրջանում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 11-ի համարում:*

Վ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ— ճառ. ՍՍՌՄ Գերագույն սովետի 5-րդ նստաշրջանում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 12-ի համարում:*

Բ. ՄՈՒՐԱԴՅԱՆ— ճառ, ՍՍՌՄ Գերագույն սովետի 5-րդ նստաշրջանում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 12-ի համարում:*

## 4. Սովետական պետությունը համաժողովրդական պետություն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿԿ ծրագիրը, *էջ 119—122, Հայպետհրատ, 1961:*

Ամբողջ ժողովրդի պետությունը, *«Պրավդա» թերթի խմբագրական հոդվածը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 9-ի համարում:*

## 5. Սովետական Միությունը պայքարում է կայուն խաղաղության համար

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ա. Ն. ԿՈՍԻԳԻՆ— Սովետական արտաքին քաղաքականության խնդիրն է խաղաղ պայմաններ ապահովել կոմունիզմի շինարարության համար, *ՍՍՌՄ Գերագույն սովետի 5-րդ նստաշրջանում տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 10-ի համարում:*

Ա. Ա. ԳՐՈՄԻԿՈՅԻ ելույթը ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի 19-րդ նստաշրջանի պլենար նիստում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 9-ի համարում:*

Միջազգային լարվածության հետագա մեղմացման և սպառազինությունների մրցավազքի սահմանափակման համար, *Սովետական կառավարության հուշագիրը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 9-ի համարում:*

## 6. Յուրաքանչյուրիս պարտքն է կոմունիստական վերաբերմունք ունենալ աշխատանքի նկատմամբ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Կոմունիստական դաստիարակության մասին, *Հայպետհրատ, 1958:*

ՍՄԿԿ ծրագիրը, *էջ [illegible], Հայպետհրատ, 1961:*

Խոսենք ինքնադաստիարակության մասին, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի [illegible]-ի համարում:*

# ՑԱՆԿ

## 1964 ԹՎԱԿԱՆԻՆ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՆՅՈՒԹԵՐԻ

### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ



### ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

(Թվեր ու փաստեր)





## ՄԵԹՈԴԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ



## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ



## ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ



## ՊԱՅՔԱՐ ԱՌՈՂՋ ԿԵՆՑԱՂԻ ՀԱՄԱՐ

# ԱԹԵԻՍՏԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ



# ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ



# ԿԱՊԻՏԱԼԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ





# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

## ԷՔՍՏՐԵՄԻԶՄ

Էքստրեմիզմը լատիներեն բառ է, որ նշանակում է ծայրահեղություն: Այդ տերմինը ունի բացասական իմաստ և սովորաբար գործածվում է ռեակցիոն գործիչների և գաղափարախոսների նկատմամբ: Օրինակ, ԱՄՆ-ի պրեզիդենտական ընտրությունների նախօրյակին դեմոկրատական պարտիայի Ատլանտիկ-Սիտիի համագումարում, փոխ-պրեզիդենտության թեկնածու Հեմֆրին ռեսպուբլիկականների կողմից պրեզիդենտության թեկնածու առաջադրված Գոլդուոտերին մեղադրեց էքստրեմիզմի մեջ: Իրոք, Գոլդուոտերը իրեն դրսևորել է որպես էքստրեմիստ, ծայրահեղ ռազմատենչ սենատոր, որը պահանջում է ուժեղացնել սպառազինությունների մրցավազքը, կիրառել «ուժի դիրքից» քաղաքականություն, ստեղծել զենքի նոր տեսակներ, խզել դիվանագիտական հարաբերությունները Սովետական Միության հետ, հարձակվել Կուբայի վրա և այլն:

## ՊԱՆԹՈՒՐՔԻԶՄ

Պանթուրքիզմը ռեակցիոն ուսմունք է, որն արտահայտում է թուրքական բուրժուազիայի նվաճողական ձգտումները: Պանթուրքիստները պահանջում են գրավել Սիբիրը, Միջին Ասիան, Մերձվոլգյան երկրամասերը, Ղրիմը, Կովկասը և ստեղծել «Մեծ Թուրքիա»: Նրանք ֆաշիստների նման ռասայական խտրականություն են քարոզում, ատելություն բորբոքում Սովետական Միության նկատմամբ: Դեռևս 1942 թվականին պաշտոնական զրույցի ժամանակ Թուրքիայի նախկին արտաքին գործերի մինիստր Սարաջօղլուն հայտարարել է, որ «ինքը որպես թուրք բուռն կերպով ցանկանում է Ռուսաստանի ոչնչացումը»:

Համաշխարհային երկրորդ պատերազմի ժամանակ թուրքական հայտնի ռասիստներից մեկը՝ Նիխալ Աձըզը կոչ էր անում բոլոր թուրքերին միավորել պատերազմի միջոցով, նախօրոք միանալով և դաշինք կնքելով ֆաշիստական Գերմանիայի հետ: Նրա կարծիքով Թուրքիան պետք է նվաճի Կիպրոս կղզին, Սիրիան, Իրաքը, Իրանը, Սովետական Ադրբեջանը և նացիստների օրինակով ստեղծի կարգապահության ու միասնության ռեժիմ:

Պանթուրքիստները համաշխարհային երկրորդ պատերազմից հետո հույսերը դրել են ամերիկյան իմպերիալիզմի վրա: Վերջինիս օգնությամբ նրանք ձգտում են իրականացնել իրենց նվաճողական ձգտումները:



## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՍԱՎՎԱ ԴԱՆԳՈՒԼՈՎ.— «Ленин говорит с Америкой»: Պատմվածքներ:

Գիրքը կառուցված է քիչ հայտնի փաստաթղթերի ու մեմուարային գրականության հեղինակների վկայությունների վրա:

Հեղինակն իր պատմվածքներում ստեղծում է Վ. Ի. Լենինի կյանքից ու գործունեությունից վերցրած ուշագրավ էպիզոդներ:

Ս. Դանգուլովի գիրքը Վլադիմիր Իլյիչ Լենինի մասին եղած գրականության մի լավ լրացում է: Գինը՝ 63 կոպ., տպաքանակ՝ 6.000:

Վ. ՉԱԼՈՅԱՆ.— «Армянский ренессанс»: Աշխատությունը, [illegible] էության, առաջին խոշոր մենագրությունն է ոչ-եվրոպական ժողովուրդների ռենեսանսի՝ վերածնության վերաբերյալ, որտեղ հեղինակը բազմակողմանիորեն՝ կրոնի, փիլիսոփայության, գրականության և արվեստի նյութերի հիման վրա քննարկվող հայկական վերածնության հարցերը կապում է երկրի սոցիալական պատմության համապատասխան էտապների հետ: Աշխատությունն առաջին անգամ լույս է տեսել 1963 թվականին Մոսկվայում՝ ռուսերեն, ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի հրատարակությամբ: Սույն հրատարակության մեջ հեղինակը կատարել է մասնակի լրացումներ, առանց բուն տեքստը փոփոխելու: Ռուսերեն հրատարակության վերջաբանը, որ գրել է նրա խմբագիր, ակադեմիկոս Ն. Կոնրադը, իր ցանկությամբ անփոփոխ կերպով զետեղվում է նաև հայերեն հրատարակության մեջ: Գիրքն սկսվում է ներածությամբ: Գրքում տպագրված են ծանոթագրություններ և Թորոս Ռոսլինի մի քանի հռչակավոր նկարները: 356 էջ, գինը՝ 70 կոպ., տպաքանակ՝ 10.000:

ՎԱՆԻԿ ՂԱԶԱՆՋՅԱՆ.— «Советской культуры первые шаги»:

Գրքում շարադրված է անգրագիտության դեմ մղվող պայքարի, ժողովրդական կրթության սովետական սիստեմի կազմակերպման, սովետահայ կուլտուրայի անդրանիկ օջախների ստեղծման համառոտ պատմությունը, լուսաբանված է Հայաստանի կոմպարտիայի վիթխարի գործունեությունը աշխատավորության քաղաքական և կուլտուր-լուսավորական դաստիարակության բնագավառում: Գինը՝ 33 կոպ., տպաքանակ՝ 2.000:

Ե. ՊԱՐՆՈՎ, Ե. ԳՅՈՒԼՇՉԵՆԿՈ.— «Вікно в антисвіт»:

Գրքում հանրամատչելիորեն պատմվում է տարրական մասնիկների մի քանի կարևոր և հետաքրքիր հատկությունների և նրանց փոխազդեցության օրենքների մասին: Հեղինակները դյուրըմբռնելիորեն քննարկում են ժամանակակից միջուկային ֆիզիկայի արդյունքների հնարավոր կիրառումները տիեզերական երևույթները բացատրելու համար: Գինը՝ 11 կոպ., տպաքանակ 3.000:

ԻՆԴԵՔՍ՝ 77704



**ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ**

# Агитатори блокнот

## № 24
## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ՎՖ 10663 Պատվեր 1426 Տիրաժ 8938

Հանձնված է արտադրության 12/XII 1964 թ.։
Ստորագրված է տպագրության 21/XII 1964 թ.։

ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան,

Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.